Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՀՈԿՏԵՄԲԵՐ 19 1961




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ



## СОДЕРЖАНИЕ

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД И ДОКЛАДОВ

Стр.



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*

Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 60, тел. 2-52-78.

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 44-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

1961 թվականի նոյեմբերի 7-ին սովետական ժողովուրդը, սոցիալիզմի լագերի ժողովուրդները և ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը հանդիսավոր կերպով տոնելու են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 44-րդ տարեդարձը։

Քառասունչորս տարի առաջ, 1917 թվականի նոյեմբերի 7-ին բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, մեծ Լենինի առաջնորդությամբ պատմության մեջ առաջին անգամ իրագործվեց հաղթական Սոցիալիստական ռևոլյուցիան, տապալվեց կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը և հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրա։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաստատման դարագլուխը։ «Ճեղքե-







լով իմպերիալիզմի ճակատը Ռուսաստանում՝ աշխարհի խոշորագույն երկրներից մեկում,— ընդգծված է ՍՄԿՊ նոր Ծրագրում,— Մեծ Հոկտեմբերը հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա, ստեղծեց նոր տիպի պետություն՝ Սովետական պետությունը, նոր տիպի դեմոկրատիա՝ դեմոկրատիա աշխատավորների համար»։ Մարդկության բազմադարյան պատմության մեջ առաջին անգամ աշխատավոր մարդը դարձավ իր երկրի, իր բախտի տերը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան քայքայեց այն բազան, որի վրա հենվում էին շահագործող դասակարգերը։ Սովետական իշխանությունը ազգայնացրեց արդյունաբերությունը, երկաթուղիները, բանկերը, հողը։ Վերացվեց կալվածատիրական հողատիրությունը։ Գյուղացիության դարավոր երազանքը իրականացավ. նա հող ստացավ։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան վերացրեց ոչ միայն սոցիալական, այլև ազգային ճնշման շղթաները։ Նա դարավոր նիրհից արթնացրեց Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի հարյուր միլիոնավոր գաղութային և կախյալ ժողովուրդներին և նրանց ազատագրական պայքարի ոգեշնչեց։ Մեծ

Հոկտեմբերն սկիզբ դրեց իմպերիալիզմի գաղութային անարգ սիստեմի փլուզմանը։

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան ցնցեց համաշխարհային կապիտալիզմի ամբողջ շենքը, աշխարհը պառակտվեց երկու հակադիր սիստեմների։

Հազարամյակների պատմության մեջ չի եղել այնպիսի մի խոշոր իրադարձություն, որը մարդկության ճակատագրի վրա այնպիսի մեծ ազդեցություն ունենար, ինչպիսին ունեցավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։

Շահագործման լծից ազատագրված ժողովուրդն սկսեց իրականացնել սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը։ Նա Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ անցած 44 տարիների ընթացքում հաջողությամբ կատարեց նոր կյանքի կառուցման մեծ և դժվարին խնդիրը։ Պատմական շատ կարճ ժամանակաշրջանում սովետական ժողովուրդն ստեղծեց ժամանակակից խոշոր արդյունաբերություն, որի շնորհիվ ՍՍՌՄ-ը դարձավ ինդուստրիալ հզոր տերություն, հասավ տնտեսական լիակատար անկախության կապիտալիստական երկրներից։ ՍՍՌՄ-ի ինդուստրացումը մեր բանվոր դասակարգի,



սովետական ամբողջ ժողովրդի պատմական մեծ սխրագործությունն է։

Սովետական ժողովուրդը հաջողությամբ լուծեց նաև սոցիալիզմի կառուցման դժվարին պրոբլեմը՝ գյուղացիական տնտեսությունների կոոպերացումը, որը մեծ ռևոլյուցիա էր տնտեսական հարաբերությունների մեջ, գյուղացիության կյանքի ամբողջ կացութաձևի մեջ։ Լենինյան կոոպերատիվ պլանի իրագործման շնորհիվ գյուղացիական դարավոր հարցը գտավ իր իսկական լուծումը։

Սոցիալիստական շինարարության տարիներին մեր երկրում իրականացվեց իսկական կուլտուրական ռևոլյուցիա, որը միլիոնավոր աշխատավորական մասսաներին դուրս բերեց հոգևոր ստրկությունից և խավարից, նրանց հաղորդակից դարձրեց մարդկության կուտակած կուլտուրայի հարստություններին։ Մեր երկիրը հսկայական թռիչք գործեց դեպի կուլտուրայի և գիտության գագաթները։ Այս ամենի շնորհիվ ՍՍՌՄ-ում սոցիալիզմը հաղթանակեց լիակատար կերպով և վերջնականապես։

«Սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքի, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի տեսական ու պրակտիկ

գործունեության շնորհիվ,— ասված է մեր պարտիայի նոր Ծրագրում,—մարդկությունն ստացավ ռեալ կերպով գոյություն ունեցող սոցիալիստական համակարգ և փորձով ստուգված գիտություն սոցիալիզմի կառուցման մասին: Դեպի սոցիալիզմ տանող գլխավոր ճանապարհը հարթված է: Այդ ճանապարհով արդեն գնում են շատ ժողովուրդներ, այդ ճանապարհով վաղ թե ուշ կգնան բոլոր ժողովուրդները»։

Պատմության մեջ առաջինը հարթելով սոցիալիզմի ուղին, սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ պայքար է ծավալել երկրի արտադրողական ուժերի հետագա վերելքի, սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու համար։

Հետևողականորեն կենսագործելով ՍՄԿՊ XX և XXI համագումարների և պարտիայի Կենտկոմի պլենումների պատմական որոշումները, վերջին տարիներին սովետական ժողովուրդը վիթխարի հաջողություններ ձեռք բերեց երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման բոլոր բնագավառներում։

Սովետական իշխանության տարիներին արդյունաբերության համախառն արտադրանքը ավելացավ ավելի քան 45 անգամ։



Ինդուստրացման և էլեկտրիֆիկացման լենինյան քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ մեր երկիրը դարձել է ինդուստրիալ հզոր տերություն։ Սովետական Միությունն այժմ արտադրում է ավելի շատ արդյունաբերական արտադրանք, քան Եվրոպայի այնպիսի երկրներ, ինչպիսիք են Անգլիան, Ֆրանսիան և Արևմտյան Գերմանիան միասին վերցրած։ Սովետական մարդկանց անձնվեր աշխատանքի, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների լայն օգտագործման շնորհիվ ՍՍՌՄ-ը Եվրոպայի կապիտալիստական գլխավոր երկրներից անցել է արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության մակարդակով։

Հաջողությամբ են կենսագործվում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 7-ամյա պլանի վիթխարի խնդիրները։

Հայտնի է, որ յոթնամյա պլանով նախատեսվում էր առաջին երկու տարում արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացնել 17 տոկոսով, մինչդեռ փաստորեն այն ավելացավ 22,1 տոկոսով։ Հակառակ բուրժուական տնտեսագետների գուշակությունների, Սովետական Միությունը պահպանում է իր զարգացման բարձր տեմպերը։

վերջին 7 տարում արդյունաբերական արտադրանքի աճը տարեկան միջին հաշվով կազմեց 11,1 տոկոս, մինչդեռ ԱՄՆ-ում կազմեց ընդամենը 2,5 տոկոս։ Այդ նշանակում է, որ սովետական արդյունաբերությունը զարգանում է ամերիկականից 4—5 անգամ արագ։

ՍՍՌՄ-ի այդ վիթխարի հաջողությունները մեծ տագնապ են առաջ բերել իմպերիալիստական երկրներում, հատկապես ԱՄՆ-ի ղեկավար շրջաններում։ Նրանք չեն կարողանում հաշտվել այն մտքի հետ, որ Սովետական Միությունը առաջիկա մի քանի տարում կգրավի աշխարհի արդյունաբերական առաջին տեղը։

Կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումարի առաջադրած յոթնամյա պլանի վիթխարի խնդիրները, մեր երկրի աշխատավորները յոթնամյակի երկրորդ տարում՝ 1960 թվականին, լուրջ հաջողությունների հասան ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման ասպարեզում։ Արդյունաբերական արտադրության ծավալը նախորդ՝ 1959 թվականի համեմատությամբ մեծացավ գրեթե 10 տոկոսով՝ պլանով նախատեսված 8,1 տոկոսի դիմաց։ 1960 թվականին արտադրվեց 6,6 միլիարդ ռուբլու շատ արդյունաբերական արտադրանք, քան նախատեսված էր պլանով։ Յոթնամյակի առաջին 2 տարում պլանից ավելի արտադրվեց 11,3 միլիարդ ռուբլու արդյունաբերական արտադրանք։ 1960 թվականին մեր երկրում արտադրվեց 46,8 միլիոն տոննա չուգուն, 65,3 միլիոն տոննա պողպատ, 50,9 միլիոն տոննա գլանվածք, 107 միլիոն տոննա երկաթի հանքաքար, 148 միլիոն տոննա նավթ, 513 միլիոն տոննա ածուխ, 292 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 418 միլիոն զույգ կաշվե կոշիկ, 4,4 միլիոն տոննա միս (առանց կոլտնտեսությունների և բնակչության արտադրածի), 848 հազար տոննա յուղ, 6,4 միլիոն տոննա շաքար և այլն։

Նախորդ տարվա համեմատությամբ 1960 թվականին ավելի արտադրվեց չուգուն՝ 3,8 միլիոն տոննա, պողպատ՝ 5,3 միլիոն տոննա, գլանվածք՝ 3,9 միլիոն տոննա, երկաթի հանքաքար՝ 12,1 միլիոն տոննա, նավթ՝ 18 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ ավելի քան 27 միլիարդ կիլովատ-ժամ, գործվածքներ՝ 290 միլիոն քառակուսի մետր, կաշվե կոշկեղեն՝ 28 միլիոն զույգ, միս՝ 202 հազար տոննա (արդյունաբերական վերամշակմամբ), կաթնամթերքներ (կաթի վերածած)՝

1 միլիոն տոննա, շաքար՝ 349 հազար տոննա։

Անցյալ տարի նախագծվեցին և կառուցվեցին 2500 տիպի կարևորագույն նոր մեքենաներ, մեխանիզմներ, ապարատներ և ուրիշ սարքավորումներ ու ավելի քան 500 տիպի նոր կարևորագույն զանազան սարքեր արտադրության վերահսկման և ավտոմատացման համար։ Երկրի գյուտարարներն ու ռացիոնալիզատորները ավելի քան 4 միլիոն առաջարկություն արեցին. դրանցից արտադրության մեջ ներդրվեց ավելի քան 2,5 միլիոնը, որը տարեկան տալիս է մոտ 1,4 միլիարդ ռուբլու խնայողություն։ Անցյալ տարում աշխատանքի արտադրողականությունն ավելացավ ավելի քան 5 տոկոսով, իսկ աշխատանքային օրվա կրճատման հաշվառմամբ աշխատանքի մեկ ժամվա արտադրողականությունն աճեց ավելի քան 10 տոկոսով։

Մեծ են մեր նվաճումները գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թ. Սեպտեմբերյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում մեր պարտիայի և սովետական ժողովրդի կատարած աշխատանքը տվել է իր հիանալի արդյունքները։ 1960 թվականին մեր երկրում



արտադրվեց 8,1 միլիարդ փութ հացահատիկ՝ 1953 թվականի 5 միլիարդ փթի դիմաց, 56,9 միլիոն տոննա շաքարի ճակնդեղ՝ 1953 թվականի 23,2 միլիոն տոննայի դիմաց, միս՝ 8,7 միլիոն տոննա (սպանդանոցային քաշով)՝ 1953 թվականի 5,8 միլիոն տոննայի դիմաց, կաթ՝ 61,5 միլիոն տոննա՝ 1953 թվականի 36,5 միլիոն տոննայի դիմաց, յուղ՝ 848 հազար տոննա՝ 1953 թվականի 497 հազար տոննայի դիմաց։

Վերջին 5 տարվա ընթացքում ապրանքային հացահատիկի արտադրությունը 1953 թվականի համեմատությամբ ավելացել է միջին հաշվով ավելի քան 1 միլիարդ փթով։ Գրեթե 2,5 անգամ ավելացել են կաթի գնումները, ավելի քան 2 անգամ՝ մսի գնումները։

Դեռ երբեք մեր երկիրը չի ունեցել գյուղատնտեսական արտադրության զարգացման այնպիսի տեմպեր, ինչպես վերջին 7 տարում։ Անցյալ տարի ՍՍՌՄ-ում արտադրվեց 61,5 միլիոն տոննա կաթ, իսկ ԱՄՆ-ում՝ ըստ նրա պաշտոնական տվյալների՝ 56,9 միլիոն տոննա։ Մեր երկրում արտադրվեց 848 հազար տոննա յուղ կամ բնակչության յուրաքանչյուր շնչին 4 կիլոգրամ, իսկ ԱՄՆ-ում՝

665 հազար տոննա յուղ կամ բնակչության յուրաքանչյուր շնչին 3,7 կիլոգրամ։

1960 թվականին պետական և կոոպերատիվ կազմակերպությունների կապիտալ ներդրումների ծավալը (չհաշված կոլտնտեսությունների կապիտալ ներդրումները) կազմեց 30,5 միլիարդ ռուբլի և 1959 թվականի կապիտալ ներդրումները գերազանցեց 11,5 տոկոսով։ Անցյալ տարում շահագործման հանձնվեցին ավելի քան 1000 նոր խոշոր պետական արդյունաբերական ձեռնարկություններ և գործող ձեռնարկությունների մեծաքանակ ցեխեր։

Մեծ են մեր հաջողությունները ժողովրդական կրթության, գիտության ու կուլտուրայի զարգացման ասպարեզում։ 1960 թվականին ՍՍՌՄ-ում սովորում էր ավելի քան 52 միլիոն մարդ։ Բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, ներառյալ երեկոյան և հեռակա հաստատությունները, սովորում է 4 միլիոն 540 հազար մարդ, որից գրեթե 2 միլիոն 400 հազարը՝ բարձրագույն ուսումնական հաստատություններում։ 1960—1961 ուսումնական տարում երկրի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները տվեցին մոտ 750 հազար երիտասարդ մասնագետներ, այդ թվում՝ մոտ 320 հազար բարձրագույն կրթությամբ մասնագետներ։ Ընթացիկ տարվա սկզբին երկրում գիտական աշխատողների թիվը կազմեց 354,000 մարդ, որից 109 հազարը դոկտորներ և գիտությունների թեկնածուներ են։



Սովետական իշխանության տարիներին անչափ աճեց աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Եթե ցարական Ռուսաստանում բանվորների մեջ չկային միջնակարգ և առավել ևս բարձրագույն կրթության տեր մարդիկ, ապա այժմ սովետական բանվորների 39 տոկոսը ունեն միջնակարգ և բարձրագույն կրթություն։ Դա արտացոլում է մեր երկրում մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև էական տարբերությունների հաղթահարման պրոցեսը։ Գիտության և տեխնիկայի մի շարք վճռական բնագավառներում մեր երկիրն արդեն աշխարհում գրավում է առաջին տեղը։ Հիրավի, իրականանում են մեծ Լենինի մարգարեական խոսքերն այն մասին, որ սոցիալիզմը գիտությունը կազատագրի նրան կաշկանդող կապանքներից և նրա առջև բաց կանի զարգացման անսահման հեռանկարներ։

Մարդկային գործունեության բոլոր ոլորտ-

ներում մեր հոյակապ նվաճումների պսակը հանդիսացավ «Վոստոկ» արբանյականավով պատմության մեջ առաջին տիեզերական թըռիչքը, որ կատարեց սովետական քաղաքացի, կոմունիստ մայոր Յուրի Գագարինը 1961 թվականի ապրիլի 12-ին։

Սովետական մարդու տիեզերական առաջին թռիչքը մեր գիտնականների, կոնստրուկտորների, տեխնիկների, բանվորների, սովետական բոլոր մարդկանց բանականության և աշխատանքի խոշոր հաղթանակն է։ Այդ համաշխարհային պատմական աննախընթաց սխրագործության մեջ արտացոլվեցին մեր Հայրենիքի հզորությունը, սոցիալիստական հասարակական և պետական կարգի գերազանցությունը, սովետական ժողովրդի դյուցազնական, ստեղծագործական ուժը։

Սովետական գիտության և տեխնիկայի էլ ավելի փայլուն հաղթանակ հանդիսացավ օգոստոսի 6-ին սովետական «Վոստոկ-2» տիեզերանավով մայոր Գերման Տիտովի 25 ժամ 18 րոպե տևողությամբ տիեզերական ճանապարհորդությունը։ Երկրագնդի շուրջը տիեզերանավով կատարելով 17 պտույտ, երկրորդ տիեզերագնաց կոմունիստ Տիտովը անցավ ավելի քան 700 հազար կիլոմետր տարածություն և նախատեսված ծրագիրը



կատարելուց հետո հաջող կերպով Հայրենիք վերադարձավ։

Հաջողությամբ կատարվեց յոթնամյակի երրորդ տարվա՝ 1961 թվականի առաջին կիսամյակի պլանը։ Յոթնամյակի երկու և կես տարում թողարկվեց 15 միլիարդ ռուբլով ավելի շատ արտադրանք, քան այդ ժամանակամիջոցի համար նախատեսված էր 7-ամյա պլանով։ Պլանից ավելի արտադրվեց 7,6 միլիոն տոննա պողպատ, 6 միլիոն տոննա գլանվածք, 8 միլիոն տոննա նավթ, 12 միլիոն խորանարդ մետր երկաթ-բետոնե ու բետոնե կոնստրուկցիա և դետալ շինարարության համար, 900 միլիոն գծամետր բամբակե գործվածք և 53 միլիոն զույգ կոշիկ։ Նշանակալից է այն, որ յոթնամյակի 2,5 տարում արտադրվեց նույնքան արդյունաբերական արտադրանք, որքան արտադրվել էր հինգերորդ հնգամյակում (1951—1955 թթ.)։ Արդյունաբերության արտադրանքի և ինքնարժեքի իջեցման պլանների գերակատարումն ավելացրեց կուտակումները և թույլ տվեց մոտավորապես 3 միլիարդ ռուբլի լրացուցիչ կարգով կապիտալ ներդրումներ հատկացնել թեթև արդյունաբերության զարգացման համար։ Ենթադրվում է, որ ընթացիկ՝ 1961 թըվականին կձուլվի առնվազն 71 միլիոն տոն-

նա պողպատ, կամ ավելի քան 6 միլիոն տոննայով ավելի, քան 1960 թվականին։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակի արդյունաբերական արտադրանքի թողարկման պլանը կատարվեց 102 տոկոսով։ Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ արդյունաբերական արտադրության ծավալն ավելացել է 8,4 տոկոսով։

1961 թվականի առաջին կիսամյակում մեր երկրում արտադրվեց 25 միլիոն տոննա չուգուն, 34,9 միլիոն տոննա պողպատ, 27,2 միլիոն տոննա գլանվածք, 57,3 միլիոն տոննա երկաթի հանքաքար, 79,7 միլիոն տոննա նավթ, 225 միլիոն տոննա ածուխ, 157 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 220 միլիոն զույգ կաշվե կոշիկ, 326 հազար սառնարան, 583 հազար լվացքի մեքենա, 338 հազար տոննա յուղ (առանց կոլտնտեսությունների արտադրության և բնակչության տնային արտադրության) և այլն։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում ժողտնտխորհների մեքենաշինական ձեռնարկություններում արտադրվել է մետաղահատ հաստոցների, դարբնոցա-մամլակային, ձուլման, փայտամշակման և այլ տեխնոլոգիական սարքավորումների ավելի քան 35 հազար միավոր՝ արտադրության հետագա մեքենայաց-





ման, ավտոմատացման, սարքավորումների արագություններն ավելացնելու և արտադրողականությունը բարձրացնելու նպատակով։

Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում գյուտարարներն ու ռացիոնալիզատորները մտցրել են ավելի քան 2 միլիոն 100 հազար առաջարկ, որից արտադրության մեջ արմատավորվել է 1,3 միլիոնից ավելին։ Դա տարեկան տալիս է ավելի քան 700 միլիոն ռուբլու տնտեսում։

Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը, անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ, ընթացիկ տարվա առաջին կիսամյակում աճել է 3,5 տոկոսով՝ արդյունաբերության բոլոր բնագավառներում բանվորների և ծառայողների աշխատանքային օրվա տևողության կրճատմամբ հանդերձ։

Իրականացնելով երկրի էլեկտրիֆիկացման մասին մեծ Լենինի պատգամները, սովետական մարդիկ կառուցեցին և շահագործման հանձնեցին մի շարք նոր էլեկտրակայաններ։ Վերջերս, սեպտեմբերի 10-ին, շահագործման հանձնվեց աշխարհում ամենահզոր՝ Վոլգայի հիդրոէլեկտրակայանը՝ 2,5 միլիոն կիլովատ հզորությամբ։ Այն տարե-





կան կարտադրի 11 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որը 5,5 անգամ շատ է ցարական Ռուսաստանում 1913 թվականին արտադրված ամբողջ էլեկտրաէներգիայից և մոտավորապես հավասար է 1950 թվականին ՍՍՌՄ-ի բոլոր հիդրոէլեկտրակայանների արտադրած էլեկտրաէներգիային։

Վոլգայի էլեկտրակայանի կառուցումը հանդիսացավ ամբողջ սովետական ժողովրդի գործը, աշխատանքային հիանալի նըվեր ՍՄԿՊ XXII համագումարին և իրավացիորեն այն կոչվեց համագումարի անվամբ։

Ընթացիկ տնտեսական տարում գյուղատնտեսության բնագավառում ձեռք են բերվել նոր հաջողություններ։ Բոլոր կուլտուրաների ցանքատարածությունը կազմեց ավելի քան 204 միլիոն հեկտար։ Ցանված է 7,7 միլիոն հեկտար հատիկացու եգիպտացորեն, որը 2,6 միլիոն հեկտարով շատ է անցյալ տարվա համեմատությամբ։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը երկրում տարեսկզբին բոլոր նախորդ տարիների համեմատությամբ ամենամեծն էր և կազմեց 75,8 միլիոն գլուխ, այդ թվում՝ 34,8 միլիոն կով, խոզերի գլխաքանակը կազմեց 58,7 միլիոն գլուխ և ոչխարներինը՝ 133 միլիոն գըլուխ։



Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում զգալի չափով ավելացան կապիտալ ներդըրումները։ Պետական պլանով նախատեսված միջոցների հաշվին կապիտալ ներդրումների ծավալը կազմեց 12,2 միլիարդ ռուբլի և անցած տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ ավելացավ 8 տոկոսով։ Բացի այդ, զգալի ներդրումներ կատարվեցին ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների ոչ կենտրոնացված միջոցների հաշվին, ինչպես նաև կոլտնտեսությունների կողմից։

Մեր երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի աննախընթաց վերելքը ռեալ պայմաններ ստեղծեց սովետական մարդու բարեկեցիկ կյանքի համար։ Սովետական ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը մեր պարտիայի գլխավոր խնդիրն է։ 1960 թվականին ՍՍՌՄ ազգային եկամուտը կազմեց ավելի քան 144 միլիարդ ռուբլի։ Աշխատավորների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով 1959 թվականի համեմատությամբ ավելացան 5 տոկոսով։ Բնակչությունը հանրային ֆոնդերից ժողովրդական կրթության, բուժսպասարկման, սոցիալական ապահովության և զանազան վճարումների ու արտոնություննե-

րի համար ստացավ 24,5 միլիարդ ռուբլի՝ նախորդ՝ 1959 թվականի 23 միլիարդ ռուբլու դիմաց։

1960 թվականին ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների և ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիայի ընդունած որոշման համապատասխան ավարտվեց բանվորների և ծառայողների փոխադրումը կրճատ՝ 7 և 6-ժամյա աշխատանքային օրվա, որը կատարվեց աշխատավարձի պահպանմամբ և ցածր վարձատրվող աշխատողների աշխատավարձի բարձրացմամբ։ Աշխատանքային օրվա կրճատման շնորհիվ բանվորների և ծառայողների աշխատանքային շաբաթվա տևողությունը ներկայումս կազմում է 39,4 ժամ։

1960 թվականի հոկտեմբերի 1-ից սկսվել է բանվորներից և ծառայողներից գանձվող հարկերի աստիճանական վերացումը։

Մեր երկրում բուռն թափով ծավալվել է բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարությունը։ Պետական միջոցներով, ինչպես նաև բնակչության միջոցներով և պետական վարկի օգնությամբ քաղաքներում և քաղաքատիպ ավաններում անցած տարի շահագործման հանձնվեց ավելի քան 85 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, կամ 2 միլիոն 400 հազար բնակա-



րան՝ 1959 թվականի 2 միլիոն 237 հազար բնակարանի դիմաց։ Անցյալ տարի կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան կառուցեցին 625 հազար բնակելի տուն։ 1960 թվականին կառուցվեցին և շահագործման հանձնվեցին հանրակրթական և գիշերօթիկ բազմաթիվ դպրոցներ, հիվանդանոցներ ու պոլիկլինիկաներ, մանկապարտեզներ ու մանկամսուրներ, սանատորիաներ և հանգստյան տներ, կինոթատրոններ և կուլտուր-լուսավորական այլ հիմնարկներ։

Սովետական բազմազգ ժողովուրդների եղբայրական ընտանիքում ծաղկում ու բարգավաճում է Մեծ Հոկտեմբերի շնորհիվ ազատություն ձեռք բերած հայ ժողովուրդը։

Սովետական իշխանության տարիներին Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ երբեմնի հետամնաց Հայաստանը դարձել է զարգացած ինդուստրիայի, առաջավոր գյուղատնտեսության և ծաղկած կուլտուրայի երկիր։

Սովետական Հայաստանը պատված է գործարանների և ֆաբրիկաների խիտ ցանցով, որոնք հագեցված են նորագույն տեխնիկայով և առաջնակարգ սարքավորումներով։ Ներկայումս մեր ռեսպուբլիկայի ար-

դյունաբերության արտադրանքի ծավալը 68 անգամ գերազանցում է 1913 թվականի արդյունաբերական արտադրության մակարդակը։ Արդյունաբերության արտադրանքի աճի տարեկան միջին տեմպերը հետպատերազմյան տարիներին կազմում են 15 տոկոս։

Սովետական Հայաստանի ձեռնարկություններում արտադրվող շատ մեքենաներ ու սարքավորումներ արտահանվում են Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի 37 երկրներ։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում կառուցվել են ավելի քան 30 խոշոր ու միջին էլեկտրակայաններ։

Ներկայումս Հայաստանում տարեկան արտադրվում է ավելի քան 2,7 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Դա 1,4 անգամ շատ է, քան ամբողջ ցարական Ռուսաստանում 1913 թվականին արտադրված էլեկտրաէներգիան։ Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Սովետական Հայաստանը ետ է թողել կապիտալիստական այնպիսի զարգացած երկրների, ինչպիսիք են Ճապոնիան և Իտալիան։ Հայկական ՍՍՌ-ում բնակչության մեկ շնչին 15 անգամ շատ էլեկտրա-



էներգիա է արտադրվում, քան Թուրքիայում և 41 անգամ շատ, քան Իրանում։

Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի աշխատավորները, ծավալելով սոցիալիստական մրցություն ի պատիվ պարտիայի XXII համագումարի, զգալի հաջողություններ ունեն ժողովրդական տնտեսության հետագա զարգացման ասպարեզում։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը առաջին կիսամյակում կատարվեց 102,7 տոկոսով։ Յոթնամյակի անցած երկու և կես տարում գրեթե 75 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք թողարկվեց, քան նախատեսված էր յոթնամյա պլանով։

Մեծ թափով առաջ է ընթանում բնակարանային շինարարությունը։ Պետական պլանով նախատեսված միջոցների հաշվին ընթացիկ տարվա առաջին կիսամյակում շահագործման հանձնվեցին 140 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ կամ 15 հազար քառակուսի մետր ավելի, քան անցյալ տարվա այդ նույն ժամանակամիջոցում։

Մեծ են մեր ռեսպուբլիկայի նվաճումները նաև գյուղատնտեսության բնագավառում։ 1960 թվականին 1913 թվականի հա-

մեմատությամբ գյուղատնտեսության համախառն արտադրանքը համադրելի գներով ավելացավ գրեթե 3 անգամ։ Տարեցտարի ամրապնդվում է կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը, աճում են անբաժանելի ֆոնդերը, ավելանում են նրանց եկամուտները։

Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին՝ ծանր երաշտին, ռեսպուբլիկայի մի շարք շրջաններ և բազմաթիվ կոլտնտեսություններ ու սովխոզներ ընթացիկ տարում աճեցրին գյուղատնտեսական կուլտուրաների լավ բերք։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողներն անդուլ եռանդով պայքարում են ՍՄԿԴ Հունվարյան պլենումի որոշումները իրականացնելու, պարտիայի XXII համագումարի պատվին ստանձնած պարտավորությունները կատարելու համար։

Սովետական Հայաստանը համատարած գրագիտության ռեսպուբլիկա է։ Եթե մինչև ռևոլյուցիան մեզ մոտ սովորողների թիվը 35 հազար էր, ապա այժմ՝ 1.219 դպրոցներում սովորում է մոտավորապես 320 հազար աշակերտ։

Ռևոլյուցիայից առաջ Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, իսկ ներկայումս ռեսպուբլիկայի 10 բուհերում և 38 տեխնիկումներում ուսանում է մոտ 37 հազար մարդ։

Սովետական Հայաստանի գիտնականներն իրենց արժանի բաժինն են ներդրել սովետական գիտության զարգացման մեջ։ Ռեսպուբլիկայում այժմ կան 80 գիտահետազոտական հիմնարկներ, որոնցում աշխատում են 4.300 գիտական աշխատողներ, այդ թվում գիտությունների 164 դոկտորներ և 1.502 թեկնածուներ։

Ռեսպուբլիկայում բուռն զարգացում են ստացել մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, գրահրատարակչական գործը։

1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 6 հիվանդանոց և 73 բժիշկ, իսկ ներկայումս Սովետական Հայաստանում աշխատում են 4.500 բժիշկներ, կամ յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է 2 անգամ շատ բժիշկ, քան ԱՄՆ-ում, 2—3 անգամ շատ, քան Անգլիայում, գրեթե 9 անգամ շատ, քան Թուրքիայում և 14 անգամ շատ, քան Իրանում։

1961 թվականը հայ ժողովրդի համար առանձնապես նշանակալից տարի է։ Մայիսին տեղի ունեցավ Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Կոմունիստա-

կան պարտիայի կազմակերպման 40-ամյակի տոնակատարությունը, որին ներկա գտնվեց ՍՄԿՊ Կենտկոմի Առաջին քարտուղար և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկ. Ն. Ս. Խրուշչովը։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովի Հայաստանում լինելը պատմական խոշոր իրադարձություն եղավ հայ ժողովրդի կյանքում։ Նա բարձր գնահատեց հայ ժողովրդի նվաճումները ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման բնագավառներում, ինչպես նաև նշեց նրա հետագա վերելքի առաջնահերթ խնդիրները։

Մեր Սովետական Հայրենիքը հսկայական ձգողական ուժ է ձեռք բերել կապիտալիստական շատ երկրներում ապրող աշխատավոր հայերի համար։ «Սովետական Սոցիալիստական Հայաստանը,— ասաց ընկեր Խրուշչովը 1961 թվականի մայիսի 6-ին,- մագնիսի պես իրեն է ձգում հայ ժողովրդի լավագույն դուստրերին ու որդիներին»։

Հայաստանի Կոմպարտիայի XXII համագումարում ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Յա. Ն. Զարոբյանը Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասաց. «Բախտի քմահաճույքով աշխարհի շատ երկրներում սփռված մեր հարյուր-հազարավոր հայրենակիցների հանդեպ մենք մեր պարտքն ենք



համարում օգնել նրանց վերադառնալու իրենց միակ Հայրենիքը՝ Սովետական Հայաստան, բոլոր պայմաններն ստեղծել նրանց նորմալ կյանքի և ստեղծագործական աշխատանքի համար»։

Իրոք, հատկապես վերջին տարիներս ավելացել է կապիտալիստական երկրներում ապրող հայերից ստացվող դիմումների հոսանքը, որոնցում ջերմ ցանկություն է հայտնվում գալու իրենց Հայրենիքը՝ Սովետական Հայաստան։

Այդ կապակցությամբ որոշված է 1962 թվականից սկսած կազմակերպել արտասահմանյան տարբեր երկրներից գալու ցանկություն հայտնած հայերի հայրենադարձությունը։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը մշակել են գործնական միջոցառումներ, որոնք ապահովում են Հայրենիք վերադարձող հայերի ճիշտ տեղաբաշխումը ռեսպուբլիկայի արդյունաբերական նոր կենտրոններում և նրանց համար անհապաղ բնակարանային ու կուլտուր-կենցաղային նորմալ պայմանների ստեղծումը։ Այս նպատակներով նախատեսվում է ավելացնել բնակարանային և կոմունալ շինարարության կապիտալ ներդրում-

ները այն չափով, որն անհրաժեշտ է արտասահմանից վերադարձող հայերին տեղավորելու համար, ինչպես նաև նոր գործարանների ու ֆաբրիկաների կառուցումը Սովետական Հայաստանի նոր քաղաքացիներին աշխատանքի տեղավորելու համար։

Արտասահմանյան հայերին իրենց Հայրենիքը՝ Սովետական Հայաստան վերադարձնելու գործը կարճատև կամպանիա չէ։ Առաջիկա քսան տարում մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման փայլուն հեռանկարը, որի ուրվագծերն արդեն մշակված են, թույլ կտա հաջողությամբ իրականացնել հայերի հետագա հայրենադարձությունը։

1961 թվականի սեպտեմբերի 23-ին իր աշխատանքն ավարտեց Հայաստանի Կոմունիստական պարտիայի հերթական XXII համագումարը։

Երեք օր Հայաստանի 87 հազարանոց կոմունիստների բանակի ընտրյալները գործարար կերպով, պարտիայի ու ժողովրդի հանդեպ բարձր պատասխանատվության զգացումով քննարկեցին ՍՄԿՊ Ծրագրի և Կանոնադրության նախագծերը, Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի մեկ տարի ութ ամսվա գործունեությունը, նշեցին կոմունիս-



տական շինարարության բնագավառում պարտիական կազմակերպությունների հետագա խնդիրներն ու անելիքները։

ՍՄԿՊ Ծրագրի և Կանոնադրության նախագծերի քննարկումը համագումարում՝ կրկին անգամ ցույց տվեց, որ Հայաստանի պարտիական կազմակերպությունները, բոլոր կոմունիստներն ու աշխատավորները միահամուռ հավանություն են տալիս այդ պատմական փաստաթղթերին և ջերմ պատրաստակամություն հայտնում՝ հաջողությամբ կենսագործելու Կոմունիստական պարտիայի կողմից առաջադրված բոլոր խնդիրները։

ՀԿՊ համագումարը խոր երախտագիտությամբ նշեց այն մեծ օգնությունը, որ ցույց են տալիս ՍՄԿՊ Կենտկոմը, Սովետական կառավարությունը և անձամբ Ն. Ս. Խրուշչովը Հայկական Սովետական Ռեսպուբլիկային։ Երաշտի կապակցությամբ ռեսպուբլիկային ցույց տրված օգնությունը, Սևանի պրոբլեմի լուծումը, Ախուրյանի ջրամբարի կառուցումը, արտասահմանից հայերի հայրենիք վերադառնալու խնդրի լուծումը և ռեսպուբլիկայի համար կարևոր նշանակություն ունեցող այլ միջոցառումների իրականացումը այդ հոգատարության վառ վկայությունն են։

Հայաստանի Կոմպարտիայի համագումարը ընդունած բանաձևում լիակատար վստահություն հայտնեց, որ «Սովետական Հայաստանի կոմունիստներն ու բոլոր աշխատավորները էլ ավելի սերտորեն համախմբված ՍՄԿՊ լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը, որին գլխավորում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը, ոգեշնչված պարտիայի Ծրագրի բացած հոյակապ հեռանկարներով, կաշխատեն էլ ավելի մեծ եռանդով, կընթանան կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրների ամենաարագ կենսագործման համար մարտնչողների առաջին շարքերում, խնդիրներ, որ սովետական ժողովրդի առջև կդնի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմական XXII համագումարը»։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 44-րդ տարեդարձը էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման բնագավառներում ձեռք բերած մեծ հաջողություններով են դիմավորում սոցիալիստական համաշխարհային լագերի երկրները։

Եվրոպայի ու Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում հաջողությամբ կառուցվում է սոցիալիզմը։ Այդ երկրներում



արագ տեմպերով զարգանում է արդյունաբերությունը։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում 1960 թվականին արդյունաբերական արտադրանքը նախառևոլյուցիոն ամենաբարձր մակարդակը գերազանցեց 15,5 անգամ։ Վերջին 5—6 տարում Չինաստանում արդյունաբերական արտադրանքի աճի տարեկան տեմպերն անցնում են 25 տոկոսից։ ԳԴՌ-ում արդյունաբերության համախառն արտադրանքը 1960 թվականին գերազանցեց մինչպատերազմյան մակարդակը մոտ 3,3 անգամ, Չեխոսլովակիայում՝ ավելի քան 4, Հունգարիայում՝ 4, 3, Լեհաստանում՝ 7,8, Ռումինիայում՝ 5, Բուլղարիայում՝ 12,3 անգամ և այլն։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում հաջողությամբ է ընթանում գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը և կուլտուրայի զարգացումը։ Կյանքը հաստատում է, որ համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը անշեղորեն փոխվում է հօգուտ սոցիալիզմի։ Սոցիալիստական երկրները համաշխարհային զարգացման ընթացքի վրա ներգործություն են ունենում ամենից առաջ իրենց տնտեսական շինարարությամբ, կապիտա-

լիստական սիստեմի հետ տնտեսական մրցության մեջ ձեռք բերվող հաջողություններով։ 1960 թվականին սոցիալիստական լագերի երկրների արդյունաբերական արտադրանքի թողարկումը գրեթե 7 անգամ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը, իսկ կապիտալիստական երկրների արտադրանքի աճը նույն ժամանակամիջոցում 2,5 անգամից էլ պակաս էր։ Ներկայումս սոցիալիզմի երկրները թողարկում են համաշխարհային ամբողջ արդյունաբերական արտադրանքի ավելի քան մեկ երրորդը։ Արդեն մոտ ժամանակներս սոցիալիստական սիստեմը կապիտալիստական սիստեմին կգերազանցի արդյունաբերական արտադրանքի բացարձակ չափերով։ Մինչդեռ կապիտալիստական երկրներն ավելի ու ավելի հեռու են գնում քայքայման և անկման ճանապարհով։ Ամենահզոր կապիտալիստական տերությունը՝ ԱՄՆ-ը, հետպատերազմյան տարիներին 4-րդ անգամ տնտեսական ճգնաժամ. է ապրում։ Խրոնիկական իսկական աճող գործազրկությունը չարիք է դարձել ամերիկյան բանվոր դասակարգի համար։ Այժմ ԱՄՆ-ում գործազուրկների թիվն անցնում է 5 միլիոնից։

Սոցիալիստական երկրների զարգացման



գործում մեծ դեր է խաղում Սովետական Միության անշահախնդիր օգնությունը։ Սոցիալիզմի լագերի երկրների տնտեսական և քաղաքական համագործակցությունը գնալով է՛լ ավելի է ամրապնդվում, որը հանդիսանում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա հաղթանակների վճռական պայմանը։

Սոցիալիստական երկրների նվաճումները ցույց են տալիս, որ ժողովուրդների երջանկությունը և բարգավաճումը հնարավոր է միայն սոցիալիստական հասարակարգում։

Սոցիալիզմի լագերի երկրների հաջողությունները էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման բնագավառում ունեն միջազգային խոշոր նշանակություն։ Նրանց օրինակը ոգեշնչում է կապիտալիստական երկրների աշխատավորներին՝ իրենց կենսական շահերի, խաղաղության ու սոցիալիզմի համար մղվող պայքարում։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 44-րդ տարեդարձը սովետական ժողովուրդը, սոցիալիստական լագերի բոլոր երկրների ժողովուրդները և ամբողջ աշխարհի աշխատավորները դիմավորում են խաղաղության համար մղվող վճռական պայքարի պայմաններում։

Սոցիալիզմի լագերի երկրները Սովետական Միության գլխավորությամբ պայքարում են այն բանի համար, որպեսզի մարդկային հասարակության կյանքից ընդհանրապես բացառվեն պատերազմները։ Այդ նըպատակով Սովետական կառավարությունը դեռևս երկու տարի առաջ հանդես եկավ ընդհանուր և լրիվ զինաթափման առաջարկություններով։ Սակայն խաղաղասիրական այդ առաջարկությունները մերժվեցին իմպերիալիստական երկրների կառավարությունների կողմից։ Ավելին, իմպերիալիստական երկրները ԱՄՆ-ի գլխավորությամբ օգնում են Արևմտյան Գերմանիայի ռևանշիստական ուժերին համաշխարհային պատերազմ սանձազերծելու համար։ Արևմտյան տերությունների հանցագործ քաղաքականության հետևանքով Եվրոպայի կենտրոնում Արևմտյան Գերմանիան դարձել է նոր պատերազմի վտանգավոր օջախ։ Արևմտա-գերմանական ռևանշիստական կառավարությունը Ադենաուերի գլխավորությամբ մարդկությանն սպառնում է ատոմային պատերազմով։

Այսպիսի պայմաններում Սովետական Միությունը և սոցիալիզմի լագերի մյուս երկրները չեն կարող անտարբեր լինել, դի-



տողի դերում գտնվել։ Սովետական Միությունը վերստին հանդես եկավ Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր կնքելու և Արևմտյան Բեռլինում դրությունը նորմալացնելու առաջարկությամբ։ Միայն դա հընարավորություն կտա լրիվին վերջ տալու պատերազմի վիճակին և ուղիներ մաքրելու Եվրոպայում խաղաղության պահպանման համար։

Սովետական կառավարությունը և Վարշավայի պայմանագրի մասնակից մյուս երկրների կառավարությունները հայտարարել են, որ եթե արևմտյան տերությունները շարունակեն խուսափել գերմանական հաշտության պայմանագրի կնքումից, ապա շահագրգռված պետություններն ստիպված կլինեն Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հետ կնքել հաշտության պայմանագիրը, որը կփակի անցած պատերազմի հաշիվները և պայմաններ կըստեղծի Եվրոպայի այդ մասում դրությունը կայունացնելու համար։ Հաշտության պայմանագիրը վճռականորեն կպաշտպանի նաև ԳԴՌ-ի սուվերեն իրավունքները, ներառյալ նրա իրավունքները ցամաքային, ջրային և օդային տարածության նկատմամբ։ Հասկանալի է, որ այդ պայմաններում Արևմտյան

Բեռլինի, որպես ազատ քաղաքի, հետ կապող կոմունիկացիաների հարցը կլուծվի ԳԴՌ-ի կառավարության համաձայնությամբ։ Իսկ Արևմտյան Բեռլին մուտք գործելու հարցի շուրջը ՍՍՌՄ-ի և արևմտյան տերությունների միջև օկուպացման ժամանակամիջոցում կնքված համաձայնագրերը կկորցնեն իրենց ուժը։

Արևմտյան տերությունները և հատկապես Բոննի կառավարողները Սովետական կառավարության խաղաղասիրական այդ առաջարկություններին պատասխանեցին պատերազմ առաջ բերելու սպառնալիքներով, պատերազմական հիստերիայով, ռազմական տագնապով։

ԱՄՆ-ի կառավարությունն զգալի չափով ավելացրեց ռազմական հատկացումները, երկրում կատարվեցին զորահավաքային միջոցառումներ, վերսկսվեցին միջուկային զենքի փորձարկումները։

Պատերազմի նախապատրաստման շտապ միջոցառումներ կատարվեցին Անգլիայում, Ֆրանսիայում և հատկապես Արևմտյան Գերմանիայում։ Սովետական Միությունը, հաշվի առնելով ստեղծված դրության լրջությունը, ստիպված էր ձեռնարկելու պատասխան միջոցառումներ՝ Սովետական Միության և



սոցիալիստական լագերի երկրների պաշտպանական հզորությունն է՛լ ավելի ամուր և հուսալի դարձնելու համար։ Սովետական կառավարությունը որոշ չափով ավելացրեց պաշտպանական ծախսերը, դադարեցրեց մեր Զինված Ուժերի կրճատումը, ժամանակավորա՛պես հետաձգեց իրենց ծառայության ժամկետը լրացրած զինծառայողների պահեստ արձակումը։ Այս ամենի հետ մեկտեղ Սովետական կառավարությունը հարկադրված էր վերսկսելու միջուկային զենքի փորձարկումները։

Սովետական ժողովուրդը, սոցիալիզմի լագերի երկրների ժողովուրդները, աշխարհի խաղաղասեր ուժերը ճիշտ հասկացան Սովետական կառավարության այդ պաշտպանական պատասխան միջոցառումները և միահամուռ պաշտպանեցին այն։ Ստեղծված միջազգային այդ բարդ իրադրությունը լուրջ անհանգստություն պատճառեց աշխարհի ժողովուրդներին, բոլոր խաղաղասեր ուժերին։ Նրանք հանդես եկան արևմտյան տերությունների ռազմաշունչ քաղաքականության դատապարտումով և պահանջեցին խաղաղ բանակցությունների միջոցով լուծել միջազգային վիճելի հարցերը, այդ թվում Գերմանիայի հետ հաշտության պայմանա-

գրի կնքման և Արևմտյան Բեռլինի հարցը։

Համաշխարհային հասարակական կարծիքի ճնշման տակ արևմտյան տերությունները համաձայնվեցին Սովետական Միության հետ բանակցություններ վարել միջազգային վիճելի հարցերի շուրջը։

Սովետական Միությունը ամեն ջանք կըգործադրի խաղաղ ճանապարհով լուծելու վիճելի հարցերը, կանխելու պատերազմը, պաշտպանելու խաղաղությունն ամբողջ աշխարհում։



Բերկրալի օրեր են ապրում մեր Մեծ Հայրենիքի բոլոր ժողովուրդները։ 1961 թվականի հոկտեմբերի 17-ին Մոսկվայում իր աշխատանքներն սկսեց ՍՄԿՊ XXII համագումարը՝ կոմունիզմ կառուցողների համագումարը։ Համագումարը քննարկեց և ընդունեց պարտիայի նոր Ծրագիրը և Կանոնադրությունը, որոնց նախագծերը նախօրոք դրված էին համաժողովրդական քննարկման։

Հարազատ Կոմունիստական պարտիայի նոր Ծրագիրը և Կանոնադրությունը քաղաքական և աշխատանքային մեծ ակտիվություն են առաջ բերել սովետական մարդկանց մեջ։ Մեր դարաշրջանի պատմական այդ մեծ փաստաթղթերում սովետական ժո-



ղովուրդը, բոլոր երկրների աշխատավորները տեսնում են մեր երկրում կոմունիզմի կառուցման ուղիներն ու օրինաչափությունները։ Կոմունիստական պարտիայի նոր Ծրագիրը ստեղծագործաբար ընդհանրացնում է սոցիալիզմի կառուցման պրակտիկան, ամբողջ աշխարհում ռևոլյուցիոն շարժման փորձը և սահմանում է կոմունիստական շինարարության գլխավոր խնդիրներն ու հիմնական էտապները։

Ծրագրում մեծ իմաստությամբ տրված է կոմունիզմի գիտական բնորոշումը։ Կոմունիզմը, ասված է Ծրագրում,— անդասակարգ հասարակարգ է արտադրության միջոցների միասնական համաժողովրդական սեփականությամբ, հասարակության բոլոր անդամների սոցիալական լիակատար հավասարությամբ, որտեղ մարդկանց համակողմանի զարգացման հետ մեկտեղ շարունակ զարգացող գիտության և տեխնիկայի հիման վրա կաճեն նաև արտադրողական ուժերը, հասարակական հարստության բոլոր աղբյուրները լիառատ կըհորդեն և կիրագործվի «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» մեծ սկզբունքը։

Կոմունիզմի ժամանակ լրիվին կանհետանան դասակարգերը, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի, քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունները։ Մեր պարտիայի նոր Ծրագրում նշված են մեր երկրում արտադրողական ուժերի հետագա զարգացման և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրները։ Պարտիան խնդիր է դրել առաջիկա երկու տասնամյակում ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ՍՍՌՄ-ում հիմնականում կառուցել կոմունիստական հասարակարգ։ Ելնելով կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման կարևոր խնդրից, նախատեսվում է արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացնել առաջիկա տասը տարում՝ 1961—1970 թվականներին, մոտավորապես 2,5 անգամ, իսկ 20 տարում, մինչև 1980 թվականը՝ ոչ պակաս քան 6 անգամ։ Քանակապես սև մետալուրգիան կհասնի այնպիսի մակարդակի, որ հնարավորություն կտա տարեկան արտադրել 250 միլիոն տոննա պողպատ։

Մեր երկրում առաջիկա 20 տարում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, երկրի արտադրողական ուժերի



հետագա վիթխարի զարգացման խնդիրները լուծելիս պարտիան ղեկավարվում է Լենինի այն հանճարեղ դրույթով, որ «կոմունիզմը սովետական իշխանություն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։ Այդ կապակցությամբ ՍՄԿՊ Ծրագրում նախատեսվում է էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը 1980 թվականին հասցնել 2700—3000 միլիարդ կիլովատ ժամի։

Պարտիայի Ծրագրում նշվում է, որ ծաղկուն, բազմակողմանիորեն զարգացած և բարձր մթերատու գյուղատնտեսության ստեղծումը կոմունիզմի ստեղծման պարտադիր պայմանն է։ Դրանից ելնելով պարտիան կազմակերպում է գյուղատնտեսության հզոր վերելք, որը թույլ կտա հասնել բնակչության համար բարձրորակ սննդամթերքների ու արդյունաբերության համար հումքի առատության, ապահովել սովետական գյուղի աստիճանական անցումը կոմունիստական հասարակական հարաբերություններին և հիմնականում վերացնել գյուղի և քաղաքի միջև եղած տարբերությունները։ Այդ նպատակով խնդիր է դրվում առաջիկա տասը տարում գյուղատնտեսության արտադրանքի ծավալը մեծացնել մոտավորապես 2,5 անգամ, իսկ քսան տարում՝ 3,5 անգամ։ Գյու-

ղատնտեսական արտադրանքի աճը պետք է գերազանցի այդ ասպարեզում բնակչության պահանջարկից:

Կոլտնտեսային կարգի տնտեսական ծաղկումը պայմաններ կստեղծի, որպեսզի կոլտնտեսային սեփականությունն աստիճանաբար մոտենա և հետագայում նաև ձուլվի համաժողովրդական սեփականությանը, դառնալով միասնական կոմունիստական սեփականություն:

Առաջիկա քսանամյակում վիթխարի զարգացում կապրի Սովետական Հայաստանի էկոնոմիկան ու կուլտուրան:

Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը 20 տարում կաճի 13 անգամ: Հատկապես արագ տեմպերով կաճեն գունավոր մետալուրգիան, քիմիական, մեքենաշինական, հաստոցաշինական, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը և այլն: Էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա 13,7 անգամ, կաբելինը 14 անգամ, մետաղահատ հաստոցներինը 23,5 անգամ: 1980 թվականին ռեսպուբլիկայում կարտադրվի 54 հազար մետաղահատ հաստոց: Ավտոմատացման սարքերի և միջոցների արտադրությունը կաճի 85 անգամ: Կյուրացվի ավտոբեռնիչների, մարդա-



տար ավտոմոբիլների արտադրությունը և այլն: Ռեսպուբլիկայում կստեղծվեն հարյուրավոր նոր ժամանակակից գործարաններ, ֆաբրիկաներ և խոշոր ցեխեր:

Ռեսպուբլիկայում լայնորեն կծավալվի բնակարանային շինարարությունը, որը թույլ կտա քաղաքներում և բանավաններում յուրաքանչյուր շնչին ընկնող բնակելի տարածությունը հասցնել 1970 թվականին 13,5, իսկ 1980 թվականին՝ 16,5 քառակուսի մետրի:

Մեր պարտիայի Ծրագրում վիթխարի միջոցառումներ են նշվում ամբողջ բնակչության բարեկեցության արագ բարձրացման ուղղությամբ: «Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության»: Ահա այն բարձրագույն սկզբունքը, որը կարմիր թելի պես անցնում է Ծրագրի միջով, կազմում է նրա հիմնական բովանդակությունը:

Կոմունիստական պարտիան դնում է համաշխարհային պատմական նշանակություն ունեցող խնդիր՝ «Սովետական Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակ կապիտալիստական ամեն մի երկրի համեմատությամբ»: ՍՍՌՄ-ի ազգային եկամտի ծավալը մոտակա տարիներում կաճի գրեթե 2,5 անգամ, իսկ 20 տարում՝ մոտավորա-

պես 5 անգամ։ Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները կաճեն ավելի քան 3,5 անգամ։ Զգալիորեն կբարձրանա սովետական ինտելիգենցիայի այնպիսի ստվար խավերի աշխատավարձը, ինչպիսիք են ինժեներներն ու տեխնիկները, գյուղատնտեսներն ու զոոտեխնիկները, ուսուցիչները և բժշկության ու կուլտուրայի աշխատողները։

Սովետական արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա վիթխարի զարգացման շնորհիվ առաջիկա տասնամյակում նշանակալի չափով կբարձրանա աշխատավորների նյութական բարեկեցությունը և կուլտուր-տեխնիկական մակարդակը, բոլորի համար կապահովվի նյութական լիություն։ Բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ ՍՍՌՄ-ը կգերազանցի ԱՄՆ-ին։ Իսկ երկրորդ տասնամյակում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումով ամբողջ բնակչության համար կապահովվի նյութական և կուլտուրական բարիքների առատություն, սովետական հասարակությունն ընդհուպ կմոտենա ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքի իրականացմանը։

Առաջիկա քսանամյակի վերջում նախատեսվում է յուրաքանչյուր ընտանիքի, նե-



րառյալ նորապսակների ընտանիքները, ապահովել բարեկարգ բնակարանով։ Երկրորդ տասնամյակի ընթացքում բնակարանների օգտագործումը հետզհետե անվճար կդառնա բոլոր քաղաքացիների համար։

Կոմունալ-տրանսպորտից (տրամվայ, ավտոբուս, տրոլեյբուս, մետրո) օգտվելը երկրորդ տասնամյակում կդառնա ձրի, իսկ նրա վերջում ձրի կդառնան նաև կոմունալ ծառայությունները՝ ջրից, գազից, ջեռուցումից օգտվելը։

Առաջիկա տասնամյակում կիրականացվի անցում 6-ժամյա աշխատանքային օրվա՝ շաբաթական մեկ հանգստյան օրով կամ 34—36-ժամյա աշխատանքային շաբաթի՝ երկու հանգստյան օրով, իսկ ստորերկրյա աշխատանքներում և վնասակար արտադրություններում՝ 5-ժամյա աշխատանքային օրվա կամ 30-ժամյա հնգօրյա աշխատանքային շաբաթի։ Երկրորդ տասնամյակում կսկսվի անցում էլ ավելի կրճատ աշխատանքային շաբաթի։ Այսպիսով, Սովետական Միությունը կդառնա աշխարհում ամենակարճ, ամենաարտադրողական ու առավել բարձր վարձատրվող աշխատանքային օրվա երկիր։

Աշխատանքային օրվա կրճատման հետ

մեկտեղ կավելանա աշխատավորների ամենամյա վճարովի արձակուրդների տևողությունը։ Վճարովի արձակուրդները հետզհետե կտարածվեն կոլտնտեսականների վրա։

Մեր պարտիայի նոր Ծրագրում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում պետական շինարարության և սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման, հասարակական կազմակերպությունների դերի բարձրացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, գիտության ու կուլտուրայի զարգացման, խաղաղության պաշտպանության հարցերին։

Սովետական յուրաքանչյուր մարդու սիրտը լցվում է անսահման ուրախությամբ, երբ կարդում է պարտիայի Ծրագրի եզրափակիչ խոսքերն այն մասին, որ **սովետական մարդկանց ներկայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք։**

Սովետական ժողովուրդը անհուն բերկրանքով ընդունեց իր հարազատ պարտիայի նոր Ծրագիրը։ Նա լի է անսահման վճռականությամբ՝ իրականացնելու կոմունիզմի կառուցումը մեր երկրում, որը աշխարհում հաստատում է Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն ու Երջանկություն բոլոր ժողովուրդների համար։

—•—

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

ՄԵԿ ԺԱՄՈՎ ԽԱԼԻՖ— Այսպես են անվանում կարճ ժամանակով իշխանության տեր դարձած մարդուն։ Այդ արտահայտությունը ծագել է արաբական «Երազ արթուն ժամանակ, կամ խալիֆ մեկ ժամով» հեքիաթից։

Հեքիաթում պատմվում է այն մասին, թե ինչպես բաղդադցի երիտասարդ Աբու-Հասանը իր մոտ հյուր է հրավիրում անծանոթ վաճառականին, չկասկածելով, որ նա խալիֆ Հարուն-ալ Ռաշիդն է՝ ծպտված վաճառականի հագուստի մեջ։ Բաղդադցի երիտասարդը հայտնում է նրան իր երազանքը՝ մեկ օրով խալիֆ դառնալու մասին։ Հարուն-ալ Ռաշիդը, ցանկանալով զվարճանալ, գինու մեջ լցնում է քնաբեր փոշի և խմացնում երիտասարդին։ Նրա հրամանով երիտասարդին տանում են պալատ։ Խալիֆը պալատականներին հրամայում է երիտասարդի արթնանալուց հետո նրան տալ խալիֆին վայել հարգանք ու պատիվ։

Երիտասարդ բաղդադցին համոզվում է իր մեծության մեջ, մի ամբողջ օր հրապուրվելով պալատական կյանքի ճոխությամբ։ Մտնելով խալիֆի դերի մեջ նա սկսում է տալ տարբեր հրամաններ։ Երեկոյան նորից ստանալով քնաբեր փոշի, նրան վերադարձնում են տուն։

Վ. Ի. Լենինը «Ռուսական ռևոլյուցիայի գնահատականի առթիվ» աշխատության մեջ գրում է. «Հակառևոլյուցիոն ռեպրեսիաների սանձարձակ խրախճանքի ժամանակաշրջանում մեշչանությունը վախկոտաբար հարմարվում է կյանքի նոր տերերին, տեղավորում է մի ժամով նոր խալիֆ դարձածներին, հրաժարվում է հնից, աշխատում է մոռանալ այդ...»:

ԷՔՍՏՐԵՄԻՍՏ— լատիներեն բառ է և նշանակում է ծայրահեղ հայացքների հետևորդ, ծայրահեղ միջոցառումների կողմնակից:

Այժմ էքստրեմիստները ԱՄՆ-ի կառավարության օգնությամբ տեղափոխվում են Արևմտյան Բեռլին քայքայիչ աշխատանք կատարելու համար: Այդ կապակցությամբ վերջերս Սովետական կառավարությունը ԱՄՆ-ի կառավարությանը հղեց մի նոտա, որով պընդում է, որպեսզի ԱՄՆ-ի կառավարությունը, որն այժմ օկուպացիոն ֆունկցիաներ է կատարում Արևմտյան Բեռլինում, անհապաղ միջոցներ ձեռնարկի, որ այդ քաղաքում դադարեցվեն ԳՖՌ-ի պրովոկացիոն գործողությունները, որոնց նպատակն է Արևմտյան Բեռլին տեղափոխել ամեն տեսակի ռևանշիստների, էքստրեմիստների, լրտեսների և դիվերսանտների ԳԴՌ-ի դեմ քայքայիչ աշխատանքներ տանելու համար:

---

Խմբագիր Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Մ. Գորկի— *Մանկություն*, 279 էջ, գինը 48 կոպեկ.

Վ. Քյուրճյան— *Օգնություն կոլտնտեսություններին կաթնատնտեսության գործում*, 64 էջ, գինը՝ 8 կոպեկ.

Զ. Միրսկի— *Մեր օրերի Ռումինիան*, 115 էջ, գինը՝ 12 կոպեկ.

*Պարտիայի XXII համագումարին— Սրտի խոսք*, 63 էջ, գինը՝ 20 կոպեկ.

Մ. Արիֆ— *Ադրբեջանական ժողովրդի գրականությունը*, 95 էջ, գինը՝ 17 կոպեկ:

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 19 1961 г.**

ՎՖ 01018 Պատվեր 496 Տպաքանակ 8218

Հանձնված է արտադրության 3/X 1961 թ.:
Ստորագրված է տպագրության 10/X 1961 թ.:

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8:
Գինը 8 կոպ.